Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՅԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 13 (91)

«ՍՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ՅԵՐԵՎԱՆ—1940

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 13 (91)

«ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1940

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



# ՊՐՈՖԵՍԻՈՆԱԼ ՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ

# Դ Ի Մ Ո Ւ Մ Ը

## ԲՈԼՈՐ ԲԱՆՎՈՐՆԵՐԻՆ ՅԵՎ ԲԱՆՎՈՐՈՒՀԻՆԵՐԻՆ, ԻՆԺԵՆԵՐՆԵՐԻՆ, ՏԵԽՆԻԿՆԵՐԻՆ ՅԵՎ ԾԱՌԱՅՈՂՆԵՐԻՆ, ՊՐՈՖԵՍԻՈՆԱԼ ՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲՈԼՈՐ ԱՆԴԱՄՆԵՐԻՆ

ԸՆԿԵՐՆԵՐ,

*Համաշխարհային պատերազմը նորից ցնցեց կապիտալիստական աշխարհը: Յերկրորդ իմպերիալիստական պատերազմն արդեն իր որբիտայի մեջ և ներգրավել յերկրագնդի բնակչության կեսից ավելին: Ամբողջ կապիտալիստական աշխարհում— Յեվրոպայում և Ասիայում, Ամերիկայում, Աֆրիկայում և Ավստրալիայում— արդյունաբերությունը, տրանսպորտը, գյուղատնտեսությունն ամբողջապես յենթարկված են պատերազմի շահերին: Առավելագույն չափով ճնշում ե կապիտալիս-*

տական շահագործման մամլիչը, բանվորն աշխատում է օրական 10—12-ական ժամ և ավելի, վերացված են բոլոր կիրակի և տոն օրերը: Տնտեսության այդպիսի ընդհանուր ռազմականացման միջոցով իմպերիալիստական պետությունները վիթխարի չափով բարձրացրել են սպառազինման բոլոր տեսակների արտադրությունը:

Այսպիսով, աճել է պատերազմի վտանգը մեր յերկրի համար, միջազգային իրադրությունը դարձել է անակնկալներով հղի:

Այս պայմաններում մեր յերկիրը, հավատարիմ լինելով խաղաղության քաղաքականությանը, պարտավոր է հօգուտ ԽՍՀՄ ժողովուրդների շահերի ե՛լ ավելի ուժեղացնել իր պաշտպանական և տնտեսական հզորությունը: Մեր յերկիրը չի՛ կարող լինել սպառազինման առարկաների և անհրաժեշտ այլ ապրանքների արտադրության տեսակետից պակաս չափով նախապատրաստված, քան թե կապիտալիստական յերկրները: Մենք պետք է դառնանք շատ անգամ ավելի՛ ուժեղ, վորպեսզի բազմակողմանիորեն պատրաստ լինենք ամեն տեսակ փորձությունների համար: Մենք պետք է դառնանք ե՛լ ավելի



հզոր յերկիր, ինչպես տնտեսական, այնպես և ռազմական տեսակետից: Մեր խնդիրն է՝ ե՛լ ավելի ամրապնդել յերկրի պաշտպանությունը, ամրապնդել Կարմիր բանակը, Ռազմա-Ծովային և Օդային Նավատորմը, կատարելագործել և ավելացնել նրանց սպառազինումը, ամրապնդել սոցիալիստական արդյունաբերությունը, վորը Կարմիր բանակին մատակարարում է անհրաժեշտ ամեն բան: Մենք պարտավոր ենք լարել բոլոր ուժերը՝ ինդուստրիայի հետագա զարգացման համար, մեր պետության ամրապնդելու համար: Մեզ հարկավոր է ավելի՛ շատ մետաղ, ածուխ, նավթ, ավելի՛ շատ ինքնաթիռներ, տանկեր, թնդանոթներ, արկեր, ավելի՛ շատ շոգեքարշեր, վագոններ, դազգահներ, ավտոմոբիլներ, մեր ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ավելի՛ շատ արտադրանք:

Իր հայրենիքի պաշտպանական հզորու-
թյունն ե՛լ ավելի ամրապնդելու համար
ԽՍՀՄ բանվոր դասակարգը պետք է դիմի
անհրաժեշտ զոհողությունների: Պրոֆե-
սիոնալ Միությունների Համամիութենա-
կան Կենտրոնական Խորհուրդը գտնում է,
վոր ներկայիս 7—6 ժամյա աշխատանքա-

յին օրը մեր ձեռնարկություններում և հիմնարկներում ներկայումս անբավարար է խորհրդային երկրի առջև ծառացած խնդիրների լուծման համար։ Եթե կապիտալիստական երկրներում բանվորն ստիպված է աշխատել օրական 10—12 ժամ բուրժուազիայի համար, ապա մեր խորհրդային բանվորը կարո՛ղ է և պե՛տք է աշխատի ավելի՛ շատ, քան այժմ, առնվազն 8 ժամ, վորովհետև նա աշխատում է իր համար, իր սոցիալիստական պետության համար, ի բարօրություն ժողովրդի։

Պրոֆեսիոնալ Միությունների Համամիութենական Կենտրոնական Խորհուրդը գտնում է, վոր տվյալ պայմաններում պետք է ավելացվի աշխատանքային օրվա տևողությունը բանվորների ու ծառայողների համար՝ բոլոր պետական, կոոպերատիվ և հասարակական ձեռնարկություններում ու հիմնարկներում, և հասցվի մինչև ութը ժամի։ Անհրաժեշտ է աշխատանքային օրվա տևողությունն ավելացնել․

յոթից մինչև ութը ժամի՝ յոթժամյա աշխատանքային օր ունեցող ձեռնարկություններում․



վեցից մինչև յոթը ժամի՝ վեցժամյա աշխատանքային օր ունեցող աշխատանքներում, բացառությամբ աշխատանքի վնասակար պայմաններ ունեցող պրոֆեսիաների․

վեցից մինչև ութը ժամի՝ հիմնարկների ծառայողների համար․

վեցից մինչև ութը ժամի՝ 16 տարեկանին հասած անձանց համար։

Պրոֆեսիոնալ Միությունների Համամիութենական Կենտրոնական Խորհուրդը նաև գտնում է, վոր աշխատանքի գոյություն ունեցող կազմակերպումը ձեռնարկություններում և հիմնարկներում՝ վեցօրյակի հիման վրա, նվազեցնում է արտադրանքի թողարկումը։ Բացի դրանից, քաղաքում վեցօրյակի անցնելը խզում է ստեղծել քաղաքի ու գյուղի աշխատավորների միջև, քանի վոր գյուղում մինչև այժմ էլ գոյություն ունի յոթնօրյա շաբաթ։ Անհրաժեշտ է քաղաքում էլ պետական, կոոպերատիվ և հասարակական ձեռնարկություններում ու հիմնարկներում անցնել յոթնօրյա շաբաթի։

Այս ձեռնարկումները լուրջ քայլ կհանդիսանան Խորհրդային Երկրի տնտեսական և պաշտպանական հզորությունն է՛լ ավելի

ամրապնդելու ուղղությամբ: Յուրաքան-
չյուր բանվոր, յուրաքանչյուր բանվորու-
հի լավ գիտե, վոր աշխատանքի յուրա-
քանչյուր ավելորդ ժամը և յոթնօրյա շա-
բաթի անցնելը կտան լրացուցիչ քանակու-
թյամբ արտադրանք: Աշխատանքային օր-
վա և աշխատանքային օրերի թվի ավելա-
ցումը մեր յերկրին կտա լրացուցիչ հար-
յուր հազարավոր տոննաներ նավթ, ա-
ծուխ, հանքաքար ու մետաղ, հազարավոր
նոր դազգահներ, թնդանոթներ, ինքնա-
թիռներ, տանկեր ու այլ մեքենաներ,
հարյուր միլիոնավոր ռուբլիների լայն
սպառման ապրանքներ:

Մեկ ժամով ավելացնելուց հետո էլ, աշ-
խատանքային օրը ԽՍՀՄ-ում առաջվա
պես կմնա ամենակարճ աշխատանքային օ-
րըն աշխարհում: Այն պետք է դառնա նաև
ամենաարտադրողականը:

Մեր ձեռնարկություններում և հիմնարկ-
ներում բանվորների և ծառայողների ճըն-
շող մասսան ազնվորեն ու բարեխղճորեն է
վերաբերում դեպի իր պարտականություն-
ները, դեպի աշխատանքի և աշխատանքա-
յին կարգապահության օրենքների կատա-
րումը: Բայց նրանց կողքին կա մի վորոշ
մաս, այն է՝ արտադրության մեջ վեր-



ներս յեկած յերիտասարդ բանվորների ու
ծառայողների 3—4 տոկոսը, վորոնք ոգտ-
վելով գործազրկության բացակայությու-
նից, գործազրկության, վոր վոչնչացվել է
խորհրդային իշխանության կողմից, և չա-
բաշահելով խորհրդային պետության համ-
բերությունը, վազում են գործարանից
գործարան, քայքայում են կարգապահու-
թյան գործը, չեն ցանկանում ազնվորեն
աշխատել, արհամարհանքով են վերաբե-
րում դեպի այն պահանջների կատարումը,
վորոնք սահմանված են օրենքով և հավա-
նություն են գտել ժողովրդի կողմից: Այդ
չվողների, գործալքների դեմ էլ հենց
պետք է ներկայումս ուժեղացվեն պատժի
միջոցները: Բանվորների և գյուղացիների
սոցիալիստական պետությունն այլևս չի
կարող հանդուրժել վոր այդ մարդիկ վը-
նաս հասցնեն ժողովրդական տնտեսությա-
նը: Պետությունը պարտավոր է ժողովըր-
դական տնտեսությունը պաշտպանել ար-
տադրությունը կազմալուծողներից, պար-
տավոր է պաշտպանել ժողովրդի շահերը:

Պրոֆեսիոնալ Միությունների Համա-
միութենական Կենտրոնական Խորհուրդը
գտնում է, վոր պետք է արգելվի բան-
վորների ու ծառայողների ինքնագլուխ հե-

ռանալը պետական, կոոպերատիվ և հասա-
րակական ձեռնարկություններից ու հիմ-
նարկներից, ինչպես նաև ինքնագլուխ կեր-
պով մեկ ձեռնարկությունից մյուսը, կամ
մեկ հիմնարկից մյուսն անցնելը: Պրոֆե-
սիոնալ Միությունների Համամիութենա-
կան Կենտրոնական Խորհուրդը գտնում է,
որ այն բանվորներն ու ծառայողները,
որոնք ինքնագլուխ կերպով հեռանում են
պետական, կոոպերատիվ, հասարակական
ձեռնարկություններից ու հիմնարկներից,
պետք է դատի տրվեն և դատարանի վճ-
ռով յենթարկվեն բանտարկության, իսկ
գործալիքները պետք է պատժվեն ուղղիչ
աշխատանքներով՝ աշխատանքի վայրում,
որոշ ժամանակով պահելով նրանց աշխա-
տավարձի մի մասը:

Պրոֆեսիոնալ Միությունների Համա-
միութենական Կենտրոնական Խորհուրդը
դիմեց ԽՍՀՄ կառավարությանը և ԽՍՀՄ
Գերագույն Խորհրդի Նախագահությանը՝
առաջարկելով ավելացնել աշխատանքային
օրը և այն հասցնել մինչև ութը ժամի,
վեցօրյա շաբաթից անցնել յոթնօրյա շա-
բաթի, և արգելել ձեռնարկություններից
ու հիմնարկներից բանվորների և ծառա-
յողների ինքնագլուխ կերպով հեռանալը:



Այդ առաջարկները ԽՍՀՄ կառավարու-
թյան և ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նա-
խագահության կողմից հավանության են
գտել:

Պրոֆեսիոնալ Միությունների Համա-
միութենական Կենտրոնական Խորհուրդը
կոչ է անում ամբողջ բանվոր դասակարգին
և ամբողջ ինտելիգենցիային՝ մինչև վերջն
օգտագործել ԽՍՀՄ-ում աշխատանքի ար-
տադրողականության հետագա աճման բո-
լոր հնարավորությունները՝ հիշելով Լե-
նինի այն խոսքերը, թե աշխատանքի ար-
տադրողականությունը վերջին հաշվով ա-
մենակարևորը, ամենագլխավորն է նոր
հասարակարգի հաղթանակի համար:
Բարձրացնե՛լ աշխատանքի արտադրողա-
կանությունը, իր պետությանը տալ ավելի
շատ արտադրանք, որն անհրաժեշտ է
տնտեսական ու պաշտպանական հզորու-
թյան աճման համար,— այս է յուրաքան-
չյուր աշխատավորի առաջնահերթ պարտ-
քը, պարտականությունը, ժողովրդական
տնտեսության վո՛ր ճյուղում էլ աշխատե-
լիս լինի նա: Իր պարտքի կատարումով
Խորհրդային Միության յուրաքանչյուր քա-
ղաքացի դրսևորում է իր հայրենասիրու-

թյունը, դրսևորում և նվիրվածություն իր հայրենիքին:

Պրոֆեսիոնալ Միությունների Համամիութենական Կենտրոնական Խորհուրդը համոզմունք է հայտնում, վոր բանվորները և բանվորուհիները, ինժեներները, տեխնիկներն ու ծառայողները, պրոֆեսիոնալ միությունների բոլոր անդամներն ամբողջապես ու լիովին կպաշտպանեն այս ձեռնարկումները, ազնվորեն կկատարեն իրենց պարտքը սոցիալիստական հայրենիքի հանդեպ, ցույց կտան աշխատանքային հերոսության նոր որինակներ՝ մեծ Սոցիալիզմի Յերկրի տնտեսական ու պաշտպանական հզորության հետագա ամրապնդման համար մղվող պայքարում, կոմունիզմի նորանոր հաղթանակների համար մղվող պայքարում, Լենին-Ստալինի մեծ գործի համար մղվող պայքարում:

ՊՐՈՖԵՍԻՈՆԱԼ ՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴ



## ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ

# ՀՐԱՄԱՆԱԳԻՐԸ

## ՈՒԹԺԱՄՅԱ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՈՐՎԱ, ՅՈԹՆՈՐՅԱ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՇԱԲԱԹԻ ԱՆՑՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ ՅԵՎ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՑ ՈՒ ՀԻՄՆԱՐԿՆԵՐԻՑ ԲԱՆՎՈՐՆԵՐԻ ՈՒ ԾԱՌԱՅՈՂՆԵՐԻ ԻՆՔՆԱԳԼՈՒԽ ԿԵՐՊՈՎ ՀԵՌԱՆԱԼՆ ԱՐԳԵԼԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Պրոֆեսիոնալ Միությունների Համամիութենական Կենտրոնական Խորհրդի առաջադրանքի համաձայն, ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախագահությունը ՎՈՐՈՇՈՒՄ Է.

1. Բանվորների և ծառայողների աշխատանքային որվա տևողությունը բոլոր պետական, կոոպերատիվ և հասարակական ձեռնարկություններում ու հիմնարկներում ավելացնել.

յոթից մինչև ութը ժամի՝ յոթժամյա

աշխատանքային օր ունեցող ձեռնարկու-
թյուններում․

վեցից մինչև յոթը ժամի՝ վեցժամյա
աշխատանքային օր ունեցող աշխատանք-
ներում, բացառությամբ աշխատանքի վնա-
սակար պայմաններ ունեցող պրոֆեսիանե-
րի, ՍՍՀՄ Ժողկոմխորհի կողմից հաս-
տատված ցուցակների համաձայն․

վեցից մինչև ութը ժամի՝ հիմնարկների
ծառայողների համար․

վեցից մինչև ութը ժամի՝ 16 տարեկա-
նին հասած անձանց համար․

2․ Բոլոր պետական, կոոպերատիվ և
հասարակական ձեռնարկություններում ու
հիմնարկներում աշխատանքը վեցօրյակից
փոխադրել յոթնօրյա շաբաթի, շաբաթվա
յոթերորդ՝ կիրակի օրը համարելով հան-
գստի օր։

3․ Արգելել բանվորների և ծառայողնե-
րի ինքնագլուխ կերպով հեռանալը պետա-
կան, կոոպերատիվ և հասարակական ձեռ-
նարկություններից ու հիմնարկներից, ինչ-
պես նաև ինքնագլուխ կերպով մեկ ձեռ-
նարկությունից մյուսը կամ մեկ հիմնար-
կից մյուսը փոխադրվելը։

Ձեռնարկությունից և հիմնարկից հեռա-
նալը, կամ մեկ ձեռնարկությունից մյուսը



և մեկ հիմնարկից մյուսը փոխադրվելը
կարող է թույլատրել միայն ձեռնարկու-
թյան դիրեկտորը կամ հիմնարկի պետը։

4․ Սահմանել, որ ձեռնարկության դի-
րեկտորը և հիմնարկի պետն իրավունք ու-
նի ու պարտավոր է բանվորին և ծառա-
յողին թույլատրել հեռանալու ձեռնար-
կությունից կամ հիմնարկից հետևյալ
դեպքերում․

ա) երբ բանվորը, բանվորուհին կամ
ծառայողը բժշկա-աշխատանքային էքսպերտ
հանձնաժողովի եզրակացության համա-
ձայն չի կարող կատարել նախկին աշխա-
տանքը հիվանդության կամ հաշմանդամու-
թյան հետևանքով, իսկ ադմինիստրացիան
նրան չի կարող ուրիշ հարմար աշխատանք
տալ նույն ձեռնարկությունում կամ հիմ-
նարկում, կամ թե, երբ թոշակառուն,
վորին նշանակված է ծերության կենսա-
թոշակ, ցանկանում է թողնել աշխատան-
քը․

բ) երբ բանվորը, բանվորուհին կամ
ծառայողը պետք է դադարեցնի աշխատան-
քը, նրան բարձրագույն կամ միջնակարգ
հատուկ ուսումնական հաստատություն
ընդունելու կապակցությամբ։

Բանվորուհիների ու ծառայող կանանց

հղիության և ծննդաբերության արձա-
կուրդները պահպանվում են գործող օրենս-
դրությանը համապատասխան:

5. Սահմանել, վոր պետական, կոոպե-
րատիվ և հասարակական ձեռնարկություն-
ներից կամ հիմնարկներից ինքնագլուխ
կերպով հեռացած բանվորներն ու ծառա-
յողները դատի յեն տրվում և ժողովրդա-
կան դատարանի վճռով յենթարկվում են
բանտարկության 2-ից մինչև 4 ամիս ժա-
մանակով:

Սահմանել, վոր վոչ հարգելի պատճա-
ռով գործալքման համար պետական, կոո-
պերատիվ և հասարակական ձեռնարկու-
թյունների ու հիմնարկների բանվորներն ու
ծառայողները դատի յեն տրվում, և ժողո-
վրդական դատարանի վճռով պատժվում
են աշխատանքի վայրում ուղղիչ աշխա-
տանքներով՝ մինչև 6 ամիս ժամանակով,
պահելով նրանց աշխատավարձի մինչև
25 տոկոսը:

Այս կապակցությամբ վերացնել առանց
հարգելի պատճառների գործալքման հա-
մար պարտադիր կերպով աշխատանքից հե-
ռացնելը:

Առաջարկել ժողովրդական դատարաննե-
րին, այս հոդվածում մատնանշված բոլոր



գործերը քննության առնել ոչ ավելի
քան 5-օրյա ժամկետում և այդ գործերի
վերաբերյալ դատավճիռներն ի կատար ա-
ծել անհապաղ:

6. Սահմանել, վոր ձեռնարկությունների
դիրեկտորները և հիմնարկների պետերը
ձեռնարկությունից ու հիմարկից ինքնա-
գլուխ կերպով հեռանալու մեջ մեղավոր
անձանց և առանց հարգելի պատճառների
գործալքման մեջ մեղավոր անձանց դատի
տալուց խուսափելու համար յենթարկվում
են դատական պատասխանատվության:

Սահմանել նաև, վոր ձեռնարկություն-
ների այն դիրեկտորները և հիմնարկների
պետերը, վորոնք աշխատանքի կընդունեն
ձեռնարկությունից ու հիմնարկից ինքնա-
գլուխ կերպով հեռացած՝ օրենքից թաքն-
վող՝ անձանց, յենթարկվում են դատական
պատասխանատվության:

7. Այս հրամանագիրն ուժի մեջ է մըտ-
նում 1940 թվի հունիսի 27-ից:

ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախա-
գահության նախագահ Մ. ԿԱԼԻՆԻՆ

ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախա-
գահության քարտուղար՝ Ա. ԳՈՐԿԻՆ

Մոսկվա, Կրեմլ.
26 հունիսի, 1940 թ.

## ԽՍՀՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻ ՎՈՐՈՇՈՒՄԸ

## ՈՒԹԺԱՄՎԱ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՈՐՎԱ ԱՆՑՆԵԼՈՒ ԿԱՊԱԿՑՈՒԹՅԱՄԲ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ՆՈՐՄԱՆԵՐԻ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՅԵՎ ԳՆԱՀԱՏՈՒՄՆԵՐԻ ԻՋԵՑՄԱՆ ՄԱՍԻՆ

*Աշխատանքային որվա տևողությունը մինչև* 8 *ժամի հասցնելու մասին ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախագահության* 1940 *թվի հունիսի* 26*–ի Հրամանագրի առաջին հոդվածի կապակցությամբ, ԽՍՀՄ Ժողովրդական Կոմիսարների Խորհուրդը* ՎՈՐՈՇՈՒՄ Է.

1. *Անփոփոխ պահպանել բանվորների ու ծառայողների գոյություն ունեցող որական տարիֆային (կամ հաշվարկային) դրույքները և ամսական պաշտոնական ռոճիկները:*

2. *Աշխատանքային որվա տևողության ավելացմանը հարաբերականորեն բարձրացնել արտադրանքի նորմաները և իջեցնել գործարքային գնահատումները:*



3. *Այս վորոշման կիրառումը դնել ժողովրդական կոմիսարների, ձեռնարկությունների դիրեկտորների և հիմնարկների պետերի վրա:*

ԽՍՀ Միության ժողկոմխորհի
Նախագահ՝ Վ. ՄՈԼՈՏՈՎ,

ԽՍՀ Միության ժողկոմխորհի գործերի
կառավարիչ՝ Մ. ԽԼՈՄՈՎ,

# ԲՈԼՇԵՎԻԿՈՐԵՆ ԲԱՑԱՏՐԵԼ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՈՐԵՆՔԸ

*ԽՍՀՄ-ի Գերագույն Խորհրդի Նախագահության 1940 թվի հունիսի 26-ի վորոշումը՝ ութժամյա աշխատանքային որվա, յոթնորյա աշխատանքային շաբաթի անցնելու մասին և ձեռնարկություններից ու հիմնարկներից բանվորների ու ծառայողների ինքնագլուխ կերպով հեռանալն արգելելու մասին, տնտեսական ու քաղաքական խոշոր նշանակություն ունի սոցիալիզմի յերկրի պաշտպանունակության հետագա ել ավելի ամրացման համար։*

*Այդ վորոշման համաձայն, բանվորների ու ծառայողների աշխատանքային որվա տևողությունը բոլոր պետական և կոոպերատիվ ձեռնարկություններում (բացառությամբ աշխատանքի վնասակար պայման-*



*ներ ունեցող պրոֆեսիաների) յերկարացվում է 7-ից մինչև 8 ժամի, սահմանվում է աշխատանքի 7-օրյա շաբաթ։ Արգելվում է բանվորներին, ծառայողներին ինքնակամ կերպով հեռանալ պետական, հասարակական և կոոպերատիվ ձեռնարկներից, իսկ աշխատանք լքողները, չվողները, յենթարկվում են դատական պատասխանատվության։*

*Այս վորոշումն ընդունվեց պրոֆեսիոնալ միությունների Համամիութենական Կենտրոնական Խորհրդի առաջադրանքի համաձայն, առաջադրանք, վորն արտահայտում է մեր յերկրում պրոֆեսիոնալ միություններում ընդգրկված ավելի քան 24 միլիոն աշխատավորության կամքը՝ իր հզոր հայրենիքի ավելի քան հզորացման համար։*

*Միջազգային ներկա իրադրության մեջ, յերբ վողջ կապիտալիստական յերկրները բանվոր դասակարգի տնտեսական, կենցաղային վիճակի վատթարացման հաշվին ահռելի չափերի յեն հասցրել ռազմական արդյունաբերությունը և տնտեսության բոլոր ճյուղերում տիրում է ընդհանուր ռազմականացում, բոլորն ի սպաս է դրվում հանում՝ գործարանատերերի, ֆաբրիկանտների, բանկիրների և մի խումբ իմպերիա-*

լիստների շահերի՝ դրան հակառակ մեր սոցիալիստական հայրենիքն իր խաղաղասիրական քաղաքականությամբ, սոցիալիզմի խաղաղ շինարարությամբ, փոքր ժողովրդների նկատմամբ վարած պաշտպանության քաղաքականությամբ և յերկրի տնտեսական ու ռազմական հզորությամբ, փայլում է վորպես մի լուսավոր աստղ, վորին ուղղված են ամբողջ աշխարհի աշխատավորների հայացքները:

Խորհրդային միությունը միակ սոցիալիստական յերկիրն է աշխարհում, նա զարգանում է կապիտալիստական շրջապատման պայմաններում: Այս պայմաններում, ամեն մի խորհրդային քաղաքացի, վորը համակված է իր սոցիալիստական հայրենիքի պաշտպանության ցանկությամբ, նվիրված է սոցիալիստական շինարարության գործին, պետք է մտահոգվի մեր յերկրի պաշտպանունակության, ռազմական պատրաստականության բարձրացման, տնտեսական հզորության զարգացման գործով, վորպեսզի անակնկալները մեզ հանկարծակիի չբերեն:

Այս գործում խորհրդային ամեն մի աշխատավորից պահանջվում է կատարել վորոշ զոհողություն, այդ զոհողությունը



կայանում է մի յերկու ժամ ավել աշխատելու մեջ: Յեթե կապիտալիստական յերկրներում բանվորներն աշխատում են 10-12 ժամ և կրում են անասելի զրկանքներ՝ ի հօգուտ կապիտալիստների ու խոշոր կալվածատերերի գրպանի, մեզ մոտ կարող ենք և պետք է աշխատենք 8 ժամ՝ մեզ համար, մեր պետության համար, մեր շահերի համար, հանուն սոցիալիզմի հայրենիքի պաշտպանության մեծ գործի:

ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի այդ վորոշումը մեր աշխատավորությունը դիմավորեց մեծ խանդավառությամբ: Բանվորների, ծառայողների ժողովներն ու միտինգները միահամուռ կերպով վողջունեցին պետության այդ կարևոր միջոցառումը: Հարյուրհազարավոր աշխատավորներ արտադրության մեջ, հիմնարկ-ձեռնարկներում տալիս են արտադրողականության ու կարգապահության բարձր ցուցանիշներ և գործով են ապացուցում իրենց նվիրվածությունը խորհրդային իշխանության ու բոլշևիկյան մեծ կուսակցության հանդեպ:

Այնուամենայնիվ, վորոշման ճիշտ կիրառումն ապահովելու համար, խոշոր ագիտացիոն, պրոպագանդիստական աշխատանք է պահանջվում. «Այժմ բոլոր կու-

*սակցական, պրոֆմիությենական, կոմյերիտական կազմակերպությունների համար չկա ավելի կարևոր մի խնդիր, քան՝ յուրաքանչյուր բանվորի, յուրաքանչյուր մասնագետի գիտակցությանը հասցնել այն ձեռնարկումների խորն իմաստն ու պետական անհրաժեշտությունը, վորոնց մասին խոսվում է ՀԱՄԿԽ-ի դիմումի մեջ»։ («ՊՐԱՎԴԱ»)։*

*Ագիտացիոն և պրոպագանդիստական վողջ ուժերը զինվելով վորոշման նպատակի լրիվ հասկացողությամբ, պետք է մասսաներին պարզաբանեն պետության այդ ձեռնարկումների կարևորությունն ու անհրաժեշտությունը, ապահովեն այդ ձեռնարկումների ճիշտ ու լրիվ կիրառումն ամեն մի աշխատավորի կողմից։ Բացատրական աշխատանքների ընթացքում ագիտատորը պետք է օգտագործի վոչ միայն կոլեկտիվ ագիտացիան, այլև անհատական ագիտացիայի մեթոդը, վորովհետև հաճախ պաշտոնապես հրավիրված հավաքույթներում, ունկնդիրները քաշվելով բազմությունից, խուսափում են իրենց հուզող հարցերն առաջադրել, վորի պատճառով, յերբեմն հարցերի մի մասը վորոշ ընկերների համար մնում է լրիվ չպարզված։ Անհրաժեշտ է կատա-*



*րել անհատական լայն ագիտացիոն աշխատանք, մոտենալ ամեն մի աշխատողի առանձին-առանձին, իմանալ այն հարցերի մասին, վորոնք զբաղեցնում են այս կամ այն ընկերոջը՝ կապված իր աշխատանքի հետ, հարցեր, վորոնք բղխում են տվյալ անհատի պատրաստականությունից, տվյալ աշխատանքի միջավայրից և կոնկրետ, համոզեցուցիչ կերպով, կենդանի փաստերով ու թվերով բացատրել հարցը։*

*Գերագույն Խորհրդի հունիսի 26-ի հրամանագիրը մասսայականացնելու ընթացքում, ագիտատորներն ի նկատի պետք է ունենան հետևյալ հիմնական հարցերը և փաստերը.-*

*1) 8-ժամյա աշխատանքային օր սահմանելով հանդերձ, ԽՍՀՄ-ն մնում է դարձյալ այն միակ յերկիրը, վորտեղ աշխատանքային օրն ամենակարճն է ամբողջ աշխարհում։*

*Ներկա պատերազմը կապիտալիստական յերկրներում ամբողջ արտադրությունը ծառայեցնում է ռազմական կարիքներին, պատերազմի համար է աշխատում ամբողջ բնակչությունը, վերացված են բանվոր դասակարգի բոլոր իրավունքները, հանգստի ու տոն օրերը։ Ռազմական արդյունաբերու-*

թյան մեջ են ներգրավված կանայք և մեծ
թվով անչափահասներ, վորոնց աշխատան-
քի ժամերն անսահմանափակ են: Այդ
ապացուցում են հետևյալ փաստերը.—

Անգլիայում— աշխատանքային օրվա
տևողությունը խիստ ավելացված է, իսկ
աշխատանքային շաբաթը 70 ժամից ավելի
յե: Արդյունաբերության վորոշ ճյուղերում
74 ժամ աշխատանքային շաբաթ է սահ-
մանված: Ինչ վերաբերվում է 14 տարեկան
դեռահասներին, նրանք օրական 8 ժամից
ավել են աշխատում: Առանձին խոշոր
գործարաններում, ինչպես օրինակ Լանգաս-
տեր կոմսության մեքենաշինական գործա-
րանում աշխատանքի տևողությունը հաս-
նում է 12 ժամվա:

Ֆրանսիայում— ըստ 1939 թ. մարտի
21-ին հրապարակված դեկրետի, աշխա-
տանքային օրվա տևողությունը չպետք է
գերազանցի 11 ժամից, վորում իրավունք
է վերապահվում աշխատանքի տեսչությանը՝
թույլատրել աշխատանքային օրվա տևո-
ղությունը հասցնելու մինչև 12 ժամի, վե-
րացված է կիրակնօրյա և տոն օրերի հան-
գիստը:

Գերմանիայում— աշխատանքի մինիստ-
րության թույլտվությամբ, աշխատանքային



օրը կարող է յերկարացվել մինչև 10 և 12 ժա-
մի: Աշխատանքային ժամանակի կարգա-
վորման օրենքով, վորը գործում է 1939 թ.
հունվարի մեկից, թույլատրվում է նույնիսկ
աշխատել օրական 16 ժամ: Նույն օրենքի
հիման վրա վերացված են աշխատանքային
օրվա տևողության սահմանափակումները
դեռահասների համար: Սահմանված է կա-
նանց համար աշխատանքային պարհակի--
նոր կարգ: Բոլոր ամուրի կանայք, մինչև 25
տարեկան հասակը պարտավոր են աշխա-
տել, իսկ նախքան ձեռնարկություն ընդուն-
վելը, պետք է մեկ տարի աշխատանքային
պարհակ կատարեն գյուղատնտեսության,
կամ տնային ծառայության մեջ:

Ճապոնիայում— 16 տարեկանից բարձր
տարիք ունեցող բանվորների համար, օրեն-
քով սահմանված է 12 ժամվա աշխատան-
քային օր, սակայն օրենքը թույլ է տալիս
տեղական նահանգապետի թույլտվությամբ
աշխատանքային ժամը յերկարացնել մինչև
14-ի: Ճապոնիայի խոշոր գործարաններում
վորոնք մեծ մասամբ ռազմական գործա-
րաններ են այժմ, ինչպես գրում է «Կայդզո»
ամսագիրը, աշխատանքը տարվում է, ինչ-
պես կարգ՝ 12 ժամ, իսկ առանձին դեպքե-
րում՝ էլ ավելի: Կանանց և դեռահասների

համար, վորոնք կազմում են արտադրության մեջ զբաղված բանվորների թվի 49 տոկոսը, օրենքով սահմանված է 11 ժամյա աշխատանքային օր։ Հենց նույն այդ օրենքը թույլ է տալիս գործարանատերերին և տեղական իշխանություններին յերկարացնել նրանց աշխատանքի օրերը 2 ժամով։
2) աշխատանքի օրվա տևողության ավելացումը և աշխատավարձի հարցը։

«Աշխատանքային օրվա տևողության ավելացումն ամենասերտ կերպով կապված է աշխատավարձի հետ։ Կարող է ծագել այսպիսի հարց, թե աշխատանքային օրվա ավելացմանը համապատասխանորեն պետք է ավելացնել նաև աշխատավարձը։ Հարցի այսպիսի դրվածքը կլինի միանգամայն սխալ։ Յեթե մենք աշխատանքային օրվա տևողության ավելացմանը համապատասխանորեն թույլ տայինք աշխատավարձի ավելացում, այն ժամանակ վորևե անհրաժեշտ զոհողության մասին խոսք անգամ լինել չեր կարող» (ընկ, Շվերնիկի զեկուցումից)։ Խորհրդային Միության բանվոր դասակարգը, կոլխոզային գյուղացիությունը, ինտելիգենցիան գիտեն, վոր իրենք աշխատում են իրենց համար, իրենց սոցիալիստական հասարակության համար, իրենց հայրենիքի բարորության համար, վոր մեր յերկրում պետության ու



ժողովրդի շահերը մեկ են, ահա թե ինչու պետությունը դնում է անհրաժեշտ զոհողության հարցը բանվորների, ինտելիգենցիայի կողմից։ Զոհողությունը հենց կայանում է նրանում, վոր անփոփոխ պահպանվում են բանվորների, ծառայողների գոյություն ունեցող տարիֆային (կամ հաշվային) դրույքներն ու ամսական աշխատավարձը, բարձրացվում են արտադրանքի նորմաները և իջեցվում են գործարքային գնահատումները աշխատանքային օրվա տևողության ավելացմանը համապատասխանորեն։ Սակայն, նոր պայմաններում էլ, սոցիալիստական աշխատանքի առաջավորները, ստախանովականներն ու հարվածայինները, վորոնց համար հասարակության շահերը բարձր են անհատական նեղ շահերից, այժմ էլ տալիս են նորմաների խոշոր գերակատարում և աշխատավարձի աճ։

Մոսկվայի մեքենաշինական գործարանի վարպետ՝ Ժեստերովի խմբից փականագործ Պոտյոմկինը ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի հունիսի 26-ի հրամանագրի նախորյակին աշխատելով 7 ժամ, արտադրել է 20 առարկա և աշխատել է 18 ռ. 90 կ., հունիսի 27-ին, յերբ գործարանն առաջին որն եր միայն աշխատում նոր օրենքով, նա 8 ժամվա ընթացքում պատրաստեց 28 ա-

ռարկա (40 տոկոս աճ), վորի դիմաց, նոր հաշվարկումներով նա աշխատեց 23 ռ. 15 կոպեկ։ Նույն գործարանում ատրճանակ պատրաստող բանվորուհի Յեգինան 7-ժամյա աշխատանքի վերջին օրը պատրաստել է 147 դետալ, իսկ հունիսի 27-ին՝ 206 դետալ։ Բանվորուհի Պչելինան համապատասխանորեն պատրաստել է 160 և 216 դետալ, այդ ընկերների աշխատավարձն էլ համապատասխան կերպով բարձրացել է։

Կիևի նավաշինարարական «Լենինսկայա Կուզնիցա» գործարանում բանվորների մեծ մասը հունիսի 27-ին գերակատարեցին նոր նորմաները։ Ընկ. Վոլոշինայի բրիգադան հունիսի 26-ին տվեց 210 դետալ, առաջադրված 105-ի դիմաց, հունիսի 27-ին, ԽՍՀՄ Ժողկոմխորհի վորոշման համաձայն, բարձրացված նորմաներից պետք է տային 120 դետալ, բրիգադան այդ նորման գերակատարել է ավելի քան 2 անգամ, տվել է 247 դետալ և այդ միջոցով, ընկ. Վոլոշինայի բրիգադայի աշխատավարձն ավելի բարձր էր, քան նախորդ օրը։

3. Ի՞նչ է տալիս ժողովրդական տնտեսությանն աշխատանքային օրվա մեկ ժամի ավելացումը։

Բանվորների և ծառայողների աշխատանքի օրվա մեկ-յերկու ժամվա ավելացումը



յերկրին, ժողովրդական տնտեսությանը պետք է տա հազարավոր տոննաներ նավթ, ածուխ, յերկաթ, մանուֆակտուրա, սննդամթերքներ, ոդանավեր, տանկեր, գնդացիրներ, ավտոմեքենաներ։

Մի քանի օրվա աշխատանքի արդյունքից յեղած մոտավոր հաշիվները պերճախոս կերպով ապացուցում են այդ։

Ստալինգրադի «Կրասնի օկտյաբր» մետալուրգիական գործարանը մինչև տնտեսական տարվա վերջը պետք է տա 10 հազար տոնն ավելի պրոկատ։ Մոսկվայի «Կրասնի բոգատիր» գործարանը կարող է լրացուցիչ կերպով արտադրել 3 միլիոն զույգ ռետինե կոշկեղեն և 4 ու կես միլիոն ռուբլու այլ արտադրանք։ Ստալինգրադի տրակտորի գործարանը, լրացուցիչ կերպով, կարող է տալ մի քանի հազար տրակտոր։

Բագվի նավթահանքերի 6-րդ պրոմիսլայի նավթահանույթի վարպետ ընկ. Նիկոլայեվի հաշիվներով, միայն իրենց բրիգադայի միջոցով, 8-ժամյա բանվորական օրվա և 7-որյա շաբաթի անցնելով, կկարողանան լրացուցիչ կերպով, մեկ ամսվա ընթացքում գործի գցել 2—3 նոր նավթահորեր, վորը մեծ քանակությամբ կավելացնի նավթի հանույթը։

Յերևանի կոնսերվի գործարանը կարող է

տալ տարվա ընթացքում (լրացուցիչ) 3 մի-
լիոն պայմանական տուփ կոնսերվ։

4. Ինչպե՞ս է դրվում արտադրողակա-
նության բարձրացման, աշխատանքային
դիսցիպլինայի ել ավելի ամրապնդման
հարցը։

Գերագույն Խորհրդի հրամանագրի ճիշտ
և լրիվ կատարումը, խթան է հանդիսա-
նում արտադրողականության բարձրացման
և արտադրական դիսցիպլինայի ել ավելի
ամրապնդման համար։ Հրամանագրի այն կե-
տը, վորտեղ ասվում է. «Սահմանել, վոր
պետական, կոոպերատիվ և հասարակական
ձեռնարկություններից կամ հիմնարկներից
ինքնագլուխ կերպով հեռացած բանվորներն
ու ծառայողները դատի յեն տրվում և ժո-
ղովրդական դատարանի վճռով յենթարկ-
վում են բանտարկության 2-ից մինչև 4 ա-
միս ժամանակով» հետապնդում է այդ նը-
պատակը։ Այս միջոցառման անհրաժեշտու-
թյունը՝ ապացուցել է կյանքը. մեր
գործարաններում և հիմնարկներում դեռ
կան մարդիկ, վորոնք խախտում են աշխա-
տանքային կարգապահությունը, ձգտում են
քիչ արդյունք տալ պետությանը, և նրանից
շատ կորզել, մարդիկ, վորոնք չարաշահում
են խորհրդային օրենքները, աշխատանքի



կարգը, և այդպիսով խախտում են պետա-
կան պլանների կատարումը ժամանակին։
Այդպիսիների նկատմամբ դեռ 1938 թ. դեկ-
տեմբերին ԽՍՀՄ Ժողկոմխորհը և ՀամԿ(բ)Կ
Կենտկոմն «Աշխատանքային կարգապահու-
թյան կարգավորման միջոցառումների մա-
սին» վորոշում ընդունեցին, ուր նշվում է
մի շարք դաստիարակչական միջոցառում-
ներ՝ չվողների, լոդրերի նկատմամբ։ Բայց
այդ դասի մարդկանց մի մասի նկատմամբ
այդ միջոցառումները քիչ չեղան՝ դաստիա-
րակվելու համար, ինչպես ասել է Մոսկվա-
յի «Բոլշևիկ» կարի գործարանի հասակա-
վոր ստախանովական բանվորուհի Սիդորո-
վան չվողների մասին. «Թշնամին քնած չէ,
ամեն տեղ պատերազմ է լինում, հրդեհ է,
և, իհարկե, մեզ համար այն վտանգավոր
է, իսկ չվողները մաշում են մայթերը, վա-
զում են մի տեղից մյուսը, ի՞նչ են փընտ-
ռում, իրենք էլ չգիտեն։ Դեհ, հիմա խոսակ-
ցությունը կարճ է, չսովորեցրեց դպրոցը,
չսովորեցրեց ընկերությունը կսովորեցնի
պատիժը, հիմա արդեն քեզ վրա նեղացիր,
ուրիշ վոչ վոքի»։ Յեվ իրոք, հիմա արդեն
մեր աշխատավորության 3—4 տոկոսը կազ-
մող այն մարդիկ, վորոնք արհամարհում ե-
յին հասարակության շահերը, ձախողում ե-

յին պլանների կատարումը, վորոնց մեջ շատ ամուր եր նստած կապիտալիստական հասարակարգի մնացուկները, որենքի ուժով հաշվի կնստեն կոլեկտիվի, հասարակության շահերի հետ. այդ ե պահանջում մեր յերկիրն այժմ։

Անհրաժեշտ ե, վորպեսզի ագիտատորները վերը նշված բոլոր հարցերի լուսաբանման ընթացքում ոգտագործեն իրենց գործարանի, կոլխոզի, հիմնարկության որինակները, նախորոք ճշտելով ու մշակելով այն։ Այդ միջոցով միայն ագիտատորը կհասնի իր նպատակին։

---

Այս հարցերի կապակցությամբ ի՞նչ պետք ե կարդա ագիտատորը։

1. «Պրոֆեսիոնալ միությունների Համամիութենական Կենտրոնական Խորհրդի դիմումը»։

2. «Պրավդա»-յի հունիսի 26-ի առաջնորդողը՝ «Հոգուտ խորհրդային պետության



շահերի, ի բարորության ժողովրդի» վերնագրով։ («Խ. Հ.» հունիսի 27, № 147)։

3. «Պրավդա»-յի հունիսի 27-ի առաջնորդողը. «ԽՍՀՄ-ի բանվոր դասակարգի կամքի արտահայտությունը» վերնագրով։

4. Ընկեր Շվերնիկի զեկուցումը ՀԱՄԿխ-ի 9-րդ պլենումում, սույն թվի հունիսի 25-ին։ («Խ. Հ.» հունիսի 28, № 148)։

5. «Խ. Հայաստան»-ի հունիսի 28-ի № 148-ի 4-րդ եջում տպված տեղեկությունները՝ «աշխատանքային որվա տևողությունը և աշխատանքի պայմանները կապիտալիստական յերկրներում» վերնագրով։

---

# ԲԵՍԱՐԱԲԻԱՆ ՅԵՎ ԲՈՒԿՈՎԻՆԱՅԻ ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ՄԱՍԸ

(ՏԵՂԵԿԱՆՔ)

*Բեսսարաբիան Ռուսաստանի վաղեմի տերիտորիան է, վորը նրան եր անցել* 1812 *թվին, Բուխարեստի դաշնագրով: Մինչև* 1918 *թվի հունվարին Ռումինիայի կողմից բռնի կերպով գրավելը, այն ռուսական մի նահանգ եր, վոր գտնվում եր Դնեստր, Պրուտ գետերի և Դանուբի ստորին հոսանքի մեջև (Կիլիկինյան ճյուղ): Բեսսարաբիայի հարավային սահմանը կազմում է Սև ծովը:*

*Բեսսարաբիայի մակերեվույթը* 45·638 *քառակուսի կիլոմետր է: Իր տարածությամբ Բեսսարաբիան մեծ է Յեվրոպայի վորոշ պետություններից՝ Բելգիայից, Հոլ-*



*լանդիայից, Շվեյցարիայից: Բնակչությունը* 1938 *թվի հուլիսի* 1*-ի տվյալներով կազմում է* 3·147·646 *մարդ:* 1897 *թվի ռուսական մարդահամարի տվյալներով, Բեսսարաբիայում ապրող ուկրաինացիները, մոլդավացիները և ռուսները կազմում եյին բնակչության* 76 *տոկոսը, հրեաները՝* 12 *տոկոսը, բուլղարները՝* 5 *տոկոսը և այլն: Բեսսարաբիայի գլխավոր քաղաքն է Քիշնեվը:*

*Նախքան Ռումինիայի կողմից օկուպացիայի յենթարկվելը՝ Բեսսարաբիան ամենահարուստ հողագործական շրջանն եր: Գլխավոր կուլտուրաներն են՝ ցորենը, գարին, յեգիպտացորենը, արևածաղիկը: Բեսսարաբիան աչքի յե ընկնում բարերար կլիմայով, վորը հնարավորություն է տալիս աճեցնելու այնպիսի արժեքավոր կուլտուրաներ, ինչպես խաղողը, եգիպտացորենը, ծխախոտը: Բեսսարաբիայի հողը չափազանց արգավանդ է: Բեսսարաբիայում մշակվում եր ամբողջ վարելահողի* 99,3 *տոկոսը:*

*Բեսսարաբիայում զարգացած է հացահատիկի մշակությունը, խաղողագործությունն ու այգեգործությունը: Արդյունաբերության ճյուղերից գլխավորապես զար-*

ղացած է սննդարդյունաբերությունը (ալ-
րաղացային, ոգեգործական և այլն):
Արտահանության առարկաներն են՝ հա-
ցահատիկ, մրգեղեն, ընկույզ, իսկ մինչև
օկուպացիայի յենթարկվելը՝ անասուն,
կաշի, բուրդ, գինի, ծխախոտ և այլն:
Մինչև օկուպացիան Բեսսարաբիան
տնտեսապես ամենասերտ կերպով կապ-
ված եր մնացած ամբողջ Ռուսաստանի
հետ: Նա մանուֆակտուրա յեր ստանում
Մոսկվայի արդյունաբերական շրջանից,
ածուխ՝ Դոնբասից, նավթ՝ Բաքվից և
այլն:
Բեսսարաբական մթերքներն արտահան-
վում եյին Ուկրաինա և Օդեսայի վրա-
յով՝ համաշխարհային շուկաները:
1918 թվի փետրվարի սկզբին ռումինա-
կան կառավարող կլիկը, օգտվելով քաղա-
քացիական պատերազմի ճակատում խոր-
հըրդային Ռուսաստանի ծանր դրությու-
նից, իր զորքերը մտցրեց Բեսսարաբիայի
տերիտորիան և օկուպացիայի յենթարկեց
այն: 1918 թվի մարտի 5-ին Ռումինիայի
այն ժամանակվա վարչապետ գեներալ Ա-
վերեսկուն ՌՍՖՍՀ լիազորների հետ մի
պայմանագիր ստորագրեց, վորի համա-
ձայն Ռումինիան պարտավորվում եր ե-



վակուացիայի յենթարկել իր զորքերը
Բեսսարաբիայից և այսուհետև չխառնվել
նրա ներքին գործերին: Սակայն, արդեն
1918 թվի մարտի 27-ին ռումինական
ռազմամոլներն արյունարբու բռնությամբ և
ամենակոպիտ կեղծիքի օգնությամբ ինս-
ցենիրովկայի յենթարկեցին Բեսսարաբիան
Ռումինիային «միակցելու» ակտը: Իր
ցինիզմով չտեսնված այդ կեղծիքը կա-
տարվեց հետևյալ կերպ. Բեսսարաբիա-
յում այդ ժամանակ գոյություն ուներ
Բեսսարաբիայի յերկրամասային խոր-
հուրդ, կամ մոլդավերեն լեզվով՝ «Սֆա-
տուլ ցերիյ»: Բեսսարաբիայի տերիտորիան
Ռումինիայի կողմից օկուպացիայի յեն-
թարկվելուց հետո, «Սֆատուլ ցերին»
քմահաճորեն համալրվեց ռումինական իշ-
խանությունների հովանավորյալներով,
վորոնք նրա մեջ մեծամասնություն կազ-
մեցին: Միաժամանակ «Սֆատուլ ցերի»-ի
մի քանի ամենաականավոր անդամներ, ինչ-
պես՝ Կատարոսը, Պանցիրը, Պրինիցկին,
Զումաչենկոն, Գրյունֆելդը, Լիտվինովը
ռումինական իշխանությունների կողմից
գնդակահարվեցին անեկսիային դիմադրե-
լու համար: Ռումինական ռազմամոլների

այս սարքովի որդանն ել հենց կատարեց ռումինական հափշտակիչների առաջարկները:

Ռումինիայի անգլիական ու ֆրանսիական հովանավորները, վորոնց ցուցումով ել գործում եյին օկուպանտները, հասկանալի յե, վոր «օրինական» ճանաչեցին Ռումինիայի զավթողական ակտը: 1922 թվի ապրիլին Կերզոնի՝ արտգործմինիստր յեղած ժամնակ, անգլիական պառլամենտը ռատիֆիկացիայի յենթարկեց մի պայմանագիր, վորը ճանաչում եր Ռումինիայի սուվերենիտետը Բեսսարաբիայի տերիտորիայի նկատմամբ: 1924 թվի մարտի 19-ին նույն պլանի վորոշում կայացրեց ֆրանսիական պառլամենտը: Դեռ առաջին իմպերիալիստական պատերազմի ժամանակաշրջանում անգլիական ու ֆրանսիական իմպերիալիստները, ձգտելով Ռումինիային պատերազմի մեջ ներգրավել իրենց կողմում, չնայած վոր Ռուսաստանն այն ժամանակ Անգլիայի ու Ֆրանսիայի դաշնակիցն եր, Ռումինիային առաջարկել եյին ռուսական տերիտորիա հանդիսացող Բեսսարաբիան, իբրև «փոխհատուցում» պատերազմին մասնակցելու համար: Բեսսարաբիայի տերիտորիայում պատրաստվում եր ԽՍՀՄ-ի



վրա իմպերիալիստների ռազմական հարձակման պլացդարմներից մեկը:

Բեսսարաբիայից փոխադրվում եյին արդյունաբերական ձեռնարկությունները, արտաքսվում եյին «վոչ-ցանկալի տարրերը»: Բեսսարաբիայում տեղավորվեցին մեծ քանակությամբ ռումինական զորքեր, կառուցվում եյին ուժեղ ամրություններ և այլն: Բեսսարաբիայում անզուսպ ագիտացիա յեր մղվում ընդդեմ ԽՍՀՄ-ի:

***

Օկուպացիայի յենթարկելով Բեսսարաբիան, ռումինական ռազմամոլներն ու բոյարները զավթված տերիտորիայում անհապաղ վերականգնեցին կալվածատերերի և ժանդարմական մտրակի իշխանությունը: Հողը խլվեց գյուղացիներից և հանձնըվեց կալվածատերերին ու կուլակ բնակիչներին: Բոյարական կալվածատիրական շահագործումը գյուղացիությանը հասցրեց լիակատար աղքատացման: Ռումինական հովանավորյալների անօրինության հետևանքով, համարյա լրիվին վոչնչացվեց յերկրամասի արդյունաբերությունը, վորը հասցրեց բանվոր դասակարգի կրճատմանն ու աղքատացմանը: Բեսսարաբական քա-

ղաքներն ամայացան: Ռումինական մամու-
լի տվյալներով, ռումինական օկուպացիա-
յի առաջին 14 տարվա ընթացքում Բեսսա-
րաբիայի գլխավոր քաղաք Քիշնևի բնակ-
չությունը կրճատվեց համարյա մեկ եր-
րորդով: Նույնիսկ ռումինական բուրժուա-
կան թերթերը Քիշնևն անվանում էին
«Մուրացկանների քաղաք»: Ահա ռումինա-
կան կիսապաշտոնաթերթ «Ռոմանիա»-յի
մի արժեքավոր խոստովանությունը Բեսսա-
րաբիայի դրության մասին, որ արվել է
1939 թվի հուլիսի 31-ին. «Բեսսարաբա-
կան գյուղացիների աղքատության հետե-
վանքով, յուրաքանչյուր տարի գյուղում
94.699 նորածիններից մեռնում են
59.131-ը: 1937 թվի վիճակագրությունը
ցույց է տալիս 37.334 թոքախտավոր,
17.451 տրախոմայով հիվանդ և 90 հա-
զար մալարիայով հիվանդ: Աղքատության
և առողջապահական պայմանների բացա-
կայության հետևանքով լայնորեն տա-
րածված են ինֆեկցիոն հիվանդություննե-
րը»:

Բեսսարաբիայի աշխատավորներն օկու-
պացիայի առաջին իսկ օրերից սկսեցին
պայքար մղել անկախության համար:
Այդ դրսևորվեց բազմաթիվ զինված



ապստամբությունների միջոցով, որոն-
ցից խոշորագույններն են՝ Խոտինի ապս-
տամբությունը 1919 թվին և Տատարբու-
նարյան ապստամբությունը 1924 թվին:

Ռումինական սիգուրանցան (պահնորդա-
կան բաժինը) և զորքն արյունահեղու-
թյամբ ճնշեցին գյուղացիների այդ մաս-
սայական ապստամբությունները:

Ռումինիայի ներքին գործերի մինիստրու-
թյան վիճակագրությամբ, Բեսսարաբիա-
յում միայն մինչև 1924 թիվը տեղի է
ունեցել 153 ապստամբություն: Ռումինա-
կան օկուպացիայի միայն առաջին 10
տարվա ընթացքում սիգուրանցան և օկու-
պացիոն զորքերն առանց դատի ու զինվո-
րական դատարանների վճիռներով սպանե-
ցին 30 հազար մարդ: Բայց այս թիվն էլ,
անտարակույս, նվազեցված է:

Օկուպացիոն ռեժիմն առաջացրեց բնակ-
չության փախուստ Բեսսարաբիայից դեպի
ԽՍՀՄ, Արևմտյան Եվրոպայի երկրները
և Ամերիկա: Արդեն օկուպացիայի առաջին
10 տարվա ընթացքում Բեսսարաբիայից
հեռացավ առնվազն 300 հազար մարդ:
Մասսայական էմիգրացիան չէր դադարում
նաև հետագա տարիներին:

***

Բուկովինան Ռումինիայի հյուսիս-արևելյան մասում գտնվող մի մարզ է։ Բուկովինայի հյուսիսային մասի բնակչությունն իր հսկայական մեծամասնությամբ կապված է Խորհրդային Ուկրաինայի հետ, ինչպես պատմական փաստի ընդհանրությամբ, այնպես և լեզվի ու ազգային կազմի ընդհանրությամբ։ 1918 թվի նոյեմբերի 3-ին, Չերնովիցը ռումինական զորքերի կողմից գրավվելուց մի քանի օր առաջ, Բուկովինայի բոլոր ծայրերից հավաքված բանվորների ու գյուղացիների բազմամարդ միտինգը Չերնովիցում պահանջեց, որ Բուկովինան միակցվի Ուկրաինային։ Սակայն Սևրի կոնֆերանսը (1920 թ. օգոստոս) Բուկովինայի ամբողջ տերիտորիան ամրացրեց Ռումինիային։

Հյուսիսային Բուկովինայի բնակչությունը կազմում են գլխավորապես ուկրաինացիները։ Լեզվով ու կենցաղով բուկովինյան ուկրաինացիները չեն տարբերվում Պոդոլիայի և Վոլինիայի ուկրաինացիներից։

Բուկովինայի հյուսիսային մասում ուժեղ զարգացած է հողագործությունը։



Հացահատիկային կուլտուրաների հատկապես բարձր բերք ստացվում է Բուկովինայի հյուսիս-արևելյան մասում, Դնեստրի և Պրուտի միջև գտնվող հարթավայրում։ Հյուսիսային Բուկովինայի գլխավոր հացահատիկային կուլտուրաներն են՝ եգիպտացորենը, վարսակը, գարին։ Հատկապես կարևոր նշանակություն ունի կարտոֆելի կուլտուրան, որը գրավում է ցանքերի ամբողջ տարածության 20 տոկոսը։

Բուկովինայի գլխավոր քաղաք Չերնովիցին գտնվում է Պրուտ գետի ափին։ 1938 թվի տվյալներով, քաղաքում բնակվում էր 109.821 մարդ։ Չերնովիցում կան գյուղատնտեսական մթերքների վերամշակման գործարաններ, ինչպես նաև չուգունի ձուլման գործարան։

Ռումինական օկուպացիան չափազանց վատացրեց Հյուսիսային Բուկովինայի, մանավանդ նրա գյուղացիության դրությունը։ 1921 թվին ռումինական իշխանությունների կողմից կիրառված «հողային ռեֆորմի» հետևանքով, ուկրաինական գյուղացիները դուրս էին քշվում հողերից, իսկ հողերը կոլոնիզացիայի էին ենթարկվում ռումինական ժանդարմների

և «բարեհույս տարրերի» կողմից: Բուկովինայի ուկրաինական բնակչությունը յենթարկվում եր ազգային դաժան ճնշման: Փակվեցին բոլոր ուկրաինական դպրոցները և լուսավորական ընկերությունները:

Հյուսիսային Բուկովինայի ուկրաինական գյուղացիությունն անվերջ ապստամբում եր ռումինական օկուպանտների դեմ:

***

Բոլոր 22 տարիների ընթացքում խորհրդային կառավարությունը բազմիցս հայտարարել եր, վոր ինքը չի ճանաչել և յերբե՛ք չի ճանաչի Բեսսարաբիայի բռնի զավթումը: 1940 թվի հունիսի 26-ին ԽՍՀՄ Ժողկոմխորհի նախագահ ընկ. Մոլոտովը Մոսկվայում ռումինական դեսպանին արեց մի հայտարարություն, վորով խորհրդային կառավարությունը ռումինական կառավարությանն առաջարկեց ԽՍՀՄ-ին վերադարձնել Բեսսարաբիան և նրան հանձնել Բուկովինայի հյուսիսային մասը:

Ռումինական կառավարությունն ընդունեց ԽՍՀՄ կառավարության առաջարկը:

Խորհրդային-ռումինական կոնֆլիկտի



խաղաղ լուծումը ԽՍՀՄ խաղաղության քաղաքականության խոշորագույն հաղթանակն է:

Բեսսարաբիայի և Հյուսիսային Բուկովինայի աշխատավորների համար բացվում է պատմական զարգացման նոր եջ: Նրանք մտնում են ԽՍՀՄ ժողովուրդների յեղբայրական ընտանիքը, ժողովուրդներ, վորոնք մեծ Ստալինի հանճարեղ ղեկավարությամբ հաղթականորեն կառուցում են հրճվալից, յերջանիկ և լուսավոր կյանք:

---

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՌԱՐԱՆ

## ԹԵՐԹԵՐՈՒՄ ՀԱՆԴԻՊՈՂ ԱՌԱՆՁԻՆ ԲԱՌԵՐԻ ՅԵՎ ՀԱՍԿԱՑՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱՑԱՏՐՈՒԹՅՈՒՆ

### ՀՈԼԼԱՆԴԱԿԱՆ ՀՆԴԿԱՍՏԱՆ

(Ինդոնեզիա)

*Հոլանդական Հնդկաստանը Հոլանդայի ամենահարուստ գաղութն է: Կղզիների հսկայական արշիպելագ է այս. ավելի քան* 1900 *հազար քառակուսի կիլոմետր տարածությամբ և* 67,4 *միլիոն ազգաբնակչությամբ* (1938 *թ.*)*: Հոլանդական Հնդկաստանի կղզիների շղթան ձգվում է արեվմուտքից արևելք և հարավ-արևելք, Հնդկական օվկիանոսից մինչև Խաղաղ օվկիանոս, և արևմուտքում միանում է Անգլիային պատկանող Մալակկա թերակղզուն*



*ու նրա Բրիտանական կարևորագույն ռազմա-ծովային բազա Սինգապուրին, հարավ-արևելքում՝ անգլիական դոմինիոն Ավստրալիային, արևելքում՝ ԱՄՆ-ին պատկանող Ֆիլիպպինյան կղզիներին: Հոլանդական Հնդկաստանին համեմատաբար մոտիկ են գտնվում ճապոնական յնթամանդատային կղզիները—Պելեուն և Կարոլինյան կղզիները: Այստեղից յերևում է, թե ինչպիսի կարևոր ստրատեգիական դիրք է գրավում Հոլանդական Հնդկաստանը Խաղաղ օվկիանոսում:*

*Հոլանդական Հնդկաստանի ամենախոշոր կղզիներն են՝ Մեծ Զոնդական կղզիները—* Սումատրա (*տարածությունը* 473,6 *հազար քառակուսի կիլոմետր, ազգաբնակչությունն ավելի քան* 8 *միլիոն*), Յավա *նրա մեջ մտած* Մադուրա *փոքր կղզու հետ միասին* (*տարածությունը* 132 *հազար քառակուսի կիլոմետր, ազգաբնակչությունը մոտ* 45 *միլիոն. այստեղ է գտնվում գաղութի վարչական կենտրոն Բատավիա քաղաքը*), Բորնեո (*սրա հյուսիսային մասը պատկանում է Անգլիային. Հոլանդիային պատկանող զգալիորեն մեծ մասը ունի* 539,5 *հազար քառակուսի կիլոմետր տարածություն ավելի քան* 2 *միլիոն ազգա-*

բնակչությամբ), Ցելեբես (տարածությունը 100,4 հազար քառակուսի կիլոմետր, ազգաբնակչությունը 3 միլիոն)։ Հոլլանդական Հնդկաստանի մեջ են մտնում նաև Մոլուկյան կղզիները, վորոնք Նոր-Գվինեայի հոլլանդական կեսի հետ միասին (մյուս կեսը պատկանում է Ավստրալիային) բռնում են 496,4 հազար քառակուսի կիլոմետր, մոտ մեկ միլիոն ազգաբնակչությամբ։ Մնացած ավելի մանր կղզիները կրում են Փոքր Զոնդական անունը։

Հոլլանդական Հնդկաստանը գտնվում է հասարակածի գոտում և ունի բուսական ու հանքային ամենաթանկարժեք հարստություններ։ Կաուչուկի և անագի հանույթի գծով նա յերկրորդ տեղն է գրավում աշխարհում (1939 թվին հանվել է 372 հազար տոննա կաուչուկ, 31280 տոննա անագ)։ Ինդոնեզիան հինգերորդ տեղն է գրավում աշխարհում նավթի հանույթի գծով, տալով տարեկան մոտ 7,5 միլիոն տոննա։ Նա հանդիսանում է նաև խինինի (համաշխարհային սպառման 98%), պղպեղի (համաշխարհային սպառման 92%), սամիթի (համաշխարհային սպառման 77%), թեյի (համաշխարհային սպառման 18%), արմավե-



նու և կոկոսի յուղի, ծխախոտի, յեղեգնաշաքարի, սուրճի խոշորագույն արտադրողն ու արտահանողը։ Հոլլանդական Հնդկաստանի կղզիներում, բացի այդ, հանվում են բոքսիտներ և մարգանեցի հանքաքար։

Հոլլանդական Հնդկաստանի հսկայական հարստություններն ուժեղ թափով մշակվում են վոչ միայն հոլլանդական կապիտալիստների կողմից, այլև վաստակի աղբյուր են դարձել Անգլիայի, ԱՄՆ-ի և Ճապոնիայի կապիտալիստների համար, վորոնք պայքարում են Ինդոնեզիայում գերակշռող ազդեցություն ձեռք բերելու համար։ Յեթե 1929 թվին գաղութում ներդրված կապիտալների յերեք քառորդը, ըստ ամերիկական տվյալների, պատկանում եյին հոլլանդացիներին, ապա վերջին տարիներս հոլլանդական կապիտալն սկսել է դուրս մղվել անգլիական և ամերիկական կապիտալների կողմից։ Զգալիորեն ուժեղացրել է իր դիրքերը ճապոնական կապիտալը։ Նավթահանման մեջ գլխավոր դերը խաղում է անգլիական «Ռոյալ դաչ շել» ընկերությունը, սակայն նրա դիրքերը խախտում են ամերիկական և ճապոնական կոնցեռնները։ Իմպերիալիստական տերությունների միջև մրցություն և

գնում նաև Հոլլանդական Հնդկաստանի
հետ առևտուր անելու համար:

Յերկրորդ իմպերիալիստական պատե-
րազմը, չափից դուրս սրելով հակասու-
թյուններն իմպերիալիստների միջև, ուժե-
ղացրեց Հոլլանդական Հնդկաստանի նշա-
նակությունը թե՛ վորպես ստրատեգիական
դիրքի և թե՛ վորպես պատերազմ մղելու
համար անհրաժեշտ հումքի մատակարար-
ման կարևոր աղբյուրի: Այդ պատճառով
ԱՄՆ-ը, Անգլիան և Ճապոնիան, վորոնք
մյուս տերություններից ավելի յեն շահա-
գրգռված Հոլլանդական Հնդկաստանին տի-
րելու խնդրով, արդեն սկսել են խոսել նրա
բաժանման մասին: Սկանդինավիայում տե-
ղի ունեցող իրադարձությունները, ակտի-
վացնելով յեվրոպական պատերազմը, ան-
միջական սպառնալիքի տակ դրին Հոլլան-
դիայի չեզոքությունը: Հոլլանդական
Հնդկաստանը կարող է կտրվել մետրոպո-
լիայից, և այդ դեպքում իմպերիալիստա-
կան տերություններից յուրաքանչյուրն ու-
զում է վաղօրոք իր համար ապահովել շա-
հավետ դիրքեր, վորպեսզի այս գաղութն
իր ձեռքը ձգի: Ըստ վորում իմպերիա-
լիստները, ինչպես վոր ընդունված է,
հանդես են գալիս «Հոլլանդական Հնդկաս-



տանի ստատուս քվոյի (գոյություն ունե-
ցող դրության) պաշտպանների» դիմակով,
թեև ինքը Հոլլանդիան հայտարարում է,
թե իր խաղաղովկիանյան գաղութները վոչ
վոքի «պաշտպանության» կարիքը չեն
զգում:

Ճապոնիան, վորը վաղուց է ձգտում
տարածվելու դեպի Հարավային ծովերը,
այժմ առանձնապես սուր կերպով կարիք
ունի հումքի և վաճառահանման շուկանե-
րի: Այդ պատճառով «ճապոնական կառա-
վարությունը,—ինչպես հայտարարեց Ճա-
պոնիայի արտաքին գործերի մինիստրը,—
չի կարող մեծ հետաքրքրություն չցուցա-
բերել դեպի այն ամեն տեսակի փոփոխու-
թյունները, վորոնք հետևանք են հանդի-
սանում Յեվրոպայում պատերազմի սրման
և կարող են շոշափել Հոլլանդական Հընդ-
կաստանի ստատուս քվոն»: Այս դիվանա-
գիտական լեզուն ճապոնական մամուլը
թարգմանում է բոլորի համար հասկանա-
լի լեզվով, ասելով, վոր Ճապոնիան թույլ
չի տա վորևէ տերության տիրապետու-
թյունը Հոլլանդական Հնդկաստանում և
կկռվի Անգլիայի ու ԱՄՆ-ի դեմ կղզինե-
րին տիրելու համար:

Իր կողմից Անգլիան յերբեք չի թագցրել,

վոր Հոլլանդական Հնդկաստանն իր համար ունի առաջնակարգ ստրատեգիական նշանակություն և այն մտցրել է բրիտանական կայսրության պաշտպանության սիստեմի մեջ: Այժմ անգլիական կառավարությունը հայտարարել է, վոր նա նույն տեսակետի վրա չէ կանգնած, ինչ Ճապոնիայի կառավարությունը: «Անմիջաբար չհագրգռվել է» Հոլլանդական Հնդկաստանի դրությամբ նաև Ավստրալիայի կառավարությունը, վորը պատրաստ է պաշտպանել բրիտանական շահերը:

ԱՄՆ-ի կառավարող շրջանների տեսակետն արտահայտեց պետական քարտուղար Հելլը, վորն ասաց. «Հոլլանդական Հնդկաստանը շատ մեծ նշանակություն ունի միջազգային հարաբերությունների մեջ ամբողջ Խաղաղ ովկիանոսում: Այդ կղզիները տարածվում են 3·200 մղոնի վրա հասարակածից դեպի արևելք և արևմուտք, արևմտյան կողմում Հնդկական ովկիանոսից մինչև արևելքում Խաղաղ ովկիանոսը: Նրանք մեծ դեր են խաղում համաշխարհային առևտրի մեջ: Նրանք տալիս են չափազանց կարևոր ապրանքների, օրինակ՝ կաուչուկի, անագի, խինինի, սամիթի և այլ ապրանքների համաշխարհային



արտադրության զգալի մասը: Շատ յերկրներ, այդ թվում նաև ԱՄՆ-ը, զգալի չափով այդ կղզիներից են կախված այդ ապրանքների մատակարարման գործում: Միջամտությունը Հոլլանդական Հնդկաստանի ներքին գործերին կամ նրա ստատուս քվոյի վորևէ փոփոխությունը խաղաղ մեթոդներից տարբեր մեթոդներով, վնաս կհասցնի կայունությանը, խաղաղությանը և անվտանգությանը վոչ միայն Հոլլանդական Հնդկաստանի ռայոնում, այլև ամբողջ Խաղաղ ովկիանոսի ռայոնում»: Այլ խոսքով, ԱՄՆ-ը նույնպես պատրաստ է կռվել Ինդոնեզիայի համար:

Հոլլանդական Հնդկաստանի շուրջը բորբոքված աճուրդը կանխագդարարում է իմպերիալիստական պայքարի ուժեղացումը Խաղաղ ովկիանոսի ավազանում:

## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ-ՀԱՐԱՎՍԼԱՎԻԱԿԱՆ ՊԱՅՄԱՆԱԳԻՐ ԱՌԵՎՏՐԻ ՅԵՎ ԾՈՎԱԳՆԱՑՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Կնքված է 1940 թվի մայիսի 11-ին այն բանակցությունների հետևանքով, վորոնք տարվում էյին Մոսկվայում ապրիլի վերջին և մայիսի սկզբին ԽՍՀՄ-ի Արտա-

քին առևտրի ժողովրդական կոմիսարիատի և Հարավսլավիական տնտեսական դելեգացիայի միջև։ Ի լրացումն պայմանագրի ստորագրվեց մի համաձայնագիր այն մասին, որ ԽՍՀՄ-ն Հարավսլավիայում ունենալու է առևտրական ներկայացուցչություն իսկ Հարավսլավիան՝ ժամանակավոր առևտրական դելեգացիա ԽՍՀՄ-ում, ապա և համաձայնագիր ստորագրվեց ապրանքաշրջանառության և վճարումների մասին 1940—1941 թվի ընթացքում։

Մինչև այժմ առևտրական շրջանառությունը Խորհրդային Միության և Հարավսլավիայի միջև աննշան էր, քանի որ այդ յերկրների միջև պայմանագրային հարաբերություններ չկային։ Այժմ ապրանքաշրջանառության և վճարումների վերաբերյալ կնքված համաձայնագիրը նախատեսում է 176 միլիոն դինարի ընդհանուր ապրանքաշրջանառություն։

Հարավսլավիան (տերիտորիան՝ 247,5 հազար քառակուսի կիլոմետր, ազգաբնակչությունը՝ 15700 հազար հոգի) ոգտակար հանածոներով հարուստ յերկիր է։ Նրա ընդերքում կա յերկաթահանք, բոքսիդներ, պղինձ, արճիճ, ցինկ, ծարիր, խրոմ, արծաթ, ոսկի։ Տարեկան հանվում է մոտ



700 հազար տոննա յերկաթահանք, 400 հազար տոննայից ավելի բոքսիդներ, 750 հազար տոննա արճճի և ցինկի հանքաքար, 18 հազար տոննա ծարիր։ Պղնձի հանույթի դծով Հարավսլավիան առաջին տեղն է գըրավում Յեվրոպայում։ 1939 թվի վերջին 3 ամսում հանված է 235 հազար տոննա պըղնձի հանքաքար. տարեկան արտադրվում է 40 հազար տոննա պղինձ։ Հարավսլավիայի բնական հարստությունները շահագործվում են ոտարերկրյա, գլխավորապես անգլիական և ֆրանսիական կապիտալի կողմից։

Գյուղատնտեսությունը կազմում է Հարավսլավիայի եկոնոմիկայի հիմքը, բայց նրա տեխնիկական բազան թույլ է։ 1939 թվին ցորենի բերքը կազմել է 28,4 միլիոն ցենտներ, յեգիպտացորենինը՝ 36,9 միլիոն ցենտներ։ Մեծ զարգացում է ստացել անասնապահությունը, որի պրոդուկտներն արտահանվում են։

Հարավսլավիան արտահանում է հանքաքարեր, անտառանյութ, միս, կաթնամթերքներ, ցորեն, կերեր. ներմուծում է արդյունաբերական (գլխավորապես տեքստիլ) հումք, նավթամթերքներ, ածուխ, կաշվեղեն։ Նրա արտաքին առևտրի մեջ գլխավոր տեղն են գրավում Գերմանիան և Իտալիան։

Եվրոպայում ծավալված պատերազմն ուժեղ հարված հասցրեց հարավսլավիական տնտեսությանը։ Կրճատվեց տեքստիլ հումքի ներմուծումը (բամբակինը՝ 32 տոկոսով, բամբակեղեն մանվածքինը՝ 62 տոկոսով, բրդինը՝ 69 տոկոսով), չուգունի, ածուխի, նավթի ներմուծումը։ Շատ ձեռնարկություններ փակվեցին, աճեց գործազրկությունը։

Համաձայն խորհրդային-հարավսլավիական առևտրական պայմանագրի, ԽՍՀՄ-ն Հարավսլավիայից ներմուծելու է պղինձ, արճճի և ցինկի հանքաքարի կոնցենտրատներ, խոզի ճարպ և այլ ապրանքներ։ Հարավսլավիան ԽՍՀՄ-ից ստանալու է գյուղատնտեսական և այլ մեքենաներ, կերոսին, բամբակ և այլ ապրանքներ։ ԽՍՀՄ-ի հետ ապրանքաշրջանառության զարգացումը, որը նպաստավոր է երկու երկրների համար, անկասկած կնպաստի Հարավսլավիայի տնտեսական կյանքի աշխուժացմանը։

---



## ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

